Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք

ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄԻ
ՊՐՈՊԱԳԱՆԴԱՅԻ ԵՎ
ԱԳԻՏԱՑԻԱՅԻ ԲԱԺԻՆ

# Ագիտատորի
# ԲԼՈԿՆՈՏ




№ 13 ՀՈՒԼԻՍ 1956

## ԲՈՎԱՆԴԱԿՈՒԹՅՈՒՆ



---

Խմբագրության հասցեն.— Երևան, ՀԿԳ Կենտկոմ, II հարկ, 60-րդ սենյակ: Հեռախոս՝ 2—52—78:





# ԱԳԻՏԱՑԻՈՆ-ԲԱՑԱՏՐԱԿԱՆ ԱՇԽԱՏԱՆՔԸ ՅԱՅԼԱՂՆԵՐՈՒՄ

Ռեսպուբլիկայի ամառային արոտավայրերում, յայլաղներում հազարավոր անասնապահ կոլտնտեսականներ պայքարում են պատվով կատարել անասնաբուծության հետագա վերելքի մասին պարտիայի 20-րդ համագումարի որոշումները, սոցմրցությամբ ստանձնած իրենց պարտավորությունները: Նրանք նվիրված աշխատանք են կատարում, որպեսզի բարելավեն անասունների խնամքը, ավելացնեն անասունների գլխաքանակը և բարձրացնեն նրանց մթերատվությունը:

Անասնապահ կոլտնտեսականները անձնուրաց աշխատանքի հետ միասին ամեն օր հետաքրքրվում են այն բոլոր իրադարձություններով, որ տեղի են ունենում մեր երկրում և նրա սահմաններից դուրս:

Ինքնին հասկանալի է, որ ագիտատորները մեծ անելիքներ ունեն յայլաղներում: Նրանց խնդիրն է՝ ժամանակին և սպառիչ պատասխան տալ ունկնդիրներին հուզող հարցերին:







Հարկավոր է անասնապահ կոլտնտեսականներին հանգամանորեն պարզաբանել պարտիայի 20-րդ համագումարի որոշումները անասնաբուծության հետագա զարգացման վերաբերյալ։ Զրույցների միջոցով ունկնդիրներին ցույց տալ, որ պարտիան պահանջում է ամեն կերպ զարգացնել կոլտնտեսությունների հանրային անասնաբուծությունը, սովխոզների անասնաբուծությունը։ Ամեն կերպ ավելացնել հողատարածությունների յուրաքանչյուր 100 հեկտարի դիմաց անասնաբուծական մթերքների և հատկապես մսի արտադրությունը։ Այդ կապակցությամբ ունկնդիրներին հիշեցնել Վորոնեժի մարզի գյուղատնտեսության աշխատողների հիանալի նախաձեռնությունը, որոնք պարտավորվել են մսի արտադրությունը կրկնապատկել ոչ թե հինգ, այլ մեկ տարում, իսկ կաթի արտադրությունը՝ մեկ ու կես տարում։ Ինչ խոսք, որ վորոնեժցիների հայրենասիրական նախաձեռնությանը մեր ռեսպուբլիկայի անասնապահները ջերմորեն արձագանքեցին և այժմ էլ անասունների արոտային շրջանում նրանք ջանք չեն խնայում իրենց տված խոստումը գործի վերածելու։

Անասնաբուծության հետագա զարգաց-



ման վերաբերյալ պարտիայի 20-րդ համագումարի որոշումները պարզաբանելուց հետո անհրաժեշտ է կոնկրետ օրինակներով և մանրամասնորեն խոսել նաև այդ որոշումները կենսագործելու մասին։ Օրինակ, կարելի է բերել հետևյալ փաստերը. ինչպես այս անասնապահական տարվա անցած ամիսներին (1955 թվականի հոկտեմբերի 1-ից մինչև 1956 թվականի մայիսի 1-ը), նախորդ տարվա նույն ժամանակաշրջանի համեմատությամբ, կաթի արտադրությունը երկրում աճել է 59 տոկոսով, մեկ կովի կաթնատվությունը 384 կիլոգրամից հասել է 586 կիլոգրամի։ Խոշոր չափով ավելացել է մթերումների և գնումների կարգով պետությանը հանձնված կաթի քանակը։

Կաթի արտադրության, մթերումների և պետական գնումների պլանների կատարման գործում զգալի հաջողությունների է հասել նաև մեր ռեսպուբլիկան։ Գերակատարված է կաթի մթերումների և պետական գնումների այս տարվա առաջին կիսամյակի պլանը։ Անցյալ տարվա նույն ժամանակամիջոցի համեմատությամբ ավելի կաթ է հանձնվել 2.863 տոննա։

Այս փաստերի հետ միասին ագիտատորը պետք է օգտագործի նաև տեղական օրի-

նակներ, որպեսզի յուրաքանչյուր ունկնդիր պարզ պատկերացում ունենա այն մասին, թե ինչպես են կենսագործում պարտիայի 20-րդ համագումարի որոշումները փրենց կոլտնտեսությունում և ինչ անելիքներ ունի ինքը առաջիկայում։

Ի հարկե, սխալ կլինի և նույնիսկ վնասակար, եթե մեր ագիտատորները խոսեն միայն հաջողությունների մասին և գործը պատկերեն այնպես, թե իբր անասնաբուծության զարգացման գործում բոլոր դժվարությունները հաղթահարված են։ Հարկավոր է ագիտացիոն զրույցի ընթացքում բացահայտել թերությունները և ունկնդիրներին տալ այն հստակ միտքը, որ առաջիկայում ևս կպահանջվեն կոլտնտեսականների, ՄՏԿ-ների և սովխոզների աշխատողների, գյուղատնտեսության մասնագետների շատ ջանքեր ու աշխատանք՝ անասնաբուծությունը հասցնելու այն մակարդակին, որը համապատասխանում է ժողովրդի աճող պահանջմունքներին։

Անասնաբուծության հետագա վերելքն ապահովելու գործում խոշոր նշանակություն ունի առաջավոր փորձի ընդհանրացումն ու արմատավորումը կոլտնտեսային արտադրության մեջ։



Արոտային շրջանում լայն հնարավորու-
թյուններ կան խոշոր եղջերավոր անասուն-
ների և ոչխարների գիրացման, նրանց մթե-
րատվության բարձրացման համար։ Մեր
ռեսպուբլիկան ունի լավագույն արոտա-
վայրեր։ Առաջավոր շատ անասնապահներ
գործնականում ցույց են տվել, որ այդ արո-
տավայրերում բնական էժան կերի միջոցով
կարելի է խոշոր եղջերավոր անասուն-
ների մատղաշներին գիրացնել 80—120
կիլոգրամով, իսկ ոչխարներին՝10—20 կի-
լոգրամով։ Հենց առաջավորների այդ փորձը
մեր ագիտատորները պետք է տարածեն ա-
նասնապահական բոլոր ֆերմաներում և
կոլտնտեսականներին հանգամանորեն պար-
զաբանեն, թե նրանք, այդ առաջավորներն
ինչպե՞ս և ի՞նչ միջոցներով են ձեռք բերել
նշված հաջողությունները։

Առաջավոր փորձը կոլտնտեսային ար-
տադրության մեջ արմատավորելու նպա-
տակով պարտկազմակերպությունների ղե-
կավարությամբ, մեր ագիտատորները կա-
րող են հաճախակի Համամիութենական
գյուղատնտեսական ցուցահանդեսի մաս-
նակիցների հանդիպումներ կազմակերպել
ունկնդիրների հետ։ Հանդիպումների ըն-
թացքում ցուցահանդեսի մասնակիցները

ունկնդիրներին կպատմեն երկրի առաջավոր անասնապահների աշխատանքի դրական փորձի մասին և այդ միջոցով լայն հնարավորություն կստեղծվի ավելի արդյունավետ կերպով մասսայականացնելու անասնաբուծության առաջավորների փորձը։

Անասունների արոտային շրջանում առաջավոր անասնապահների փորձը մասսայականացնելու, նրանց առջև դրված խնդիրները պարզաբանելու գործում լավագույն միջոց է ցուցադրական ագիտացիան, որը միշտ էլ մեծ դեր է խաղացել աշխատավորների կոմունիստական դաստիարակության գործում։

Անհրաժեշտ է յայլաղներում, անասնապահների լայն շրջանում օգտագործել ագիտացիայի բոլոր ձևերն ու միջոցները, օգնել կոլտնտեսություններին պատվով կատարելու պարտիայի և կառավարության կողմից առաջադրված խնդիրները՝ երկրին տալ ավելի շատ միս, բուրդ, յուղ, կաթ և կաթնամթերքներ։

---

# ՍՍՌՄ ՌԱԶՄԱ-ԾՈՎԱՅԻՆ ՆԱՎԱՏՈՐՄԻ ՕՐԸ

Ս. Ս. ՄԱՐՏԻՐՈՍՅԱՆ
Սովետական Միության Հերոս, գեներալ-լեյտենանտ

ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի օրը համաժողովրդական տոն է, մեր սոցիալիստական պետության Ռազմա-Ծովային Ուժերի նվաճումների մի ստուգատես։

Ռազմա-Ծովային Նավատորմը, ինչպես և մեր բոլոր Զինված Ուժերը, վայելում է ժողովրդի հսկայական սերը։ Սովետական մարդիկ խորապես գիտակցում են նրա նշանակությունը Հայրենիքի անվտանգությունն ապահովելու գործում։

ՍՍՌՄ-ը ոչ միայն ցամաքային, այլև ծովային մեծ տերություն է, որի ափերը ողողում են տասնչորս ծով և երկու օվկիանոս։ Նրա ծովային սահմանները ձգվում են քառասուն յոթ հազար կիլոմետրի վրա։

Մեր նավատորմը աշխարհի ամենահին նավատորմերից մեկն է։ Նա ունի մարտա-

կան մեծ տրադիցիաներ։ Ռազմա-Ծովային Նավատորմը միշտ էլ կարևոր դեր է խաղացել մեր երկրի պատմության մեջ։

Ռուս ժողովրդի պայքարը դեպի ծովեր ելք ունենալու համար, առանց որի, ինչպես ընդգծել է Կ. Մարքսը չի կարող զարգանալ ոչ մի մեծ ազգ, պահանջեց Նավատորմի ակտիվ մասնակցությունը, որպես մի այնպիսի կարևորագույն ուժի, որն ընդունակ էր դիմադրելու օտարերկրյա տերությունների այն փորձերին, որ անում էին նրանք Ռուսաստանը Բալթիկ ծովի, Սև ծովի, Խաղաղ օվկիանոսի ափերից ետ վանելու համար։ Այդ պայքարում ռուսական Նավատորմը ձեռք բերեց մարտական բազմահարուստ փորձ և հիանալի տրադիցիաներ։

Սովետական մարդիկ հպարտանում են այն հաղթանակներով, որ տարել են ռուսական նավաստիները Գանգուտի, Սինոպի և մյուս ճակատամարտերում։ Անցյալի ռազմական ականավոր գործիչների՝ Սուվորովի, Կուտուզովի և ուրիշների անունների հետ միասին, ոսկե տառերով են գրված նավատորմի զորավարներ Ուշակովի, Սենյավինի, Լազարևի, Նախիմովի, Մակարովի անմահ անունները։



Կոմունիստական պարտիայի մարտական դրոշի ներքո ռուսական զինվորական նավաստիները քանիցս պայքարի են ելել ինքնակալության դեմ։ Սովետական մարդիկ սրբությամբ պահպանում են պոտյոմկինցիների հիշատակը, որոնց դերը 1905—1907 թվականների ռևոլյուցիայի մեջ բարձր է գնահատել Վ. Ի. Լենինը։ Ռուսական նավաստիները աչքի ընկնող դեր են խաղացել Հոկտեմբերյան զինված ապստամբության մեջ։ Նրանք իրենց անթառամ փառքով պսակեցին քաղաքացիական կռվի ժամանակ։ Ուժեղ՝ իրենց ռևոլյուցիոն ոգով, ոգեշնչված սոցիալիստական Հայրենիքի պաշտպանության վեհ նպատակներով՝ մեր նավաստիները քիչ հաղթանակներ չեն տարել Հոկտեմբերի նվաճումները պաշտպանելիս։

Հոկտեմբերյան Սոցիալիստական Մեծ ռևոլյուցիայից հետո, 1918 թվականի փետրվարի 12-ի դեկրետով, որը ստորագրել էր մեծ Լենինը, հին Նավատորմը ցրվեց և ստեղծվեց Բանվորա-Գյուղացիական Կարմիր Նավատորմ։ Հետագայում մեր Նավատորմը զարգացավ և աճեց սոցիալիստական պետության հզորության աճմանը համընթաց։

Նախապատերազմյան հնգամյակների տարիներին մեր սոցիալիստական արդյունաբե-

րությունը Սովետական Բանակին և Սովետական Ռազմա-Ծովային Ուժերին զինեց առաջնակարգ մարտական տեխնիկայով։

Մեր մարտական ռազմանավերը իրենց տակտիկա-տեխնիկական տվյալներով չէին զիջում և նույնիսկ գերազանցում էին արտասահմանյան համապատասխան ռազմանավերին։

Պարտիան մշտական ուշադրություն էր նըվիրում ռազմական նավաստիների կադրերի ստեղծմանը։ Նա անդուլ կերպով Ռազմա-Ծովային Ուժերի անձնակազմը դաստիարակում էր սովետական հայրենասիրության ոգով, սոցիալիստական Հայրենիքի նկատմամբ անսահման սիրո և նվիրվածության ոգով։

Կոմունիստական պարտիայի տարած հըսկայական կազմակերպական և դաստիարակչական աշխատանքի շնորհիվ մեր նավատորմը, որը հանդիսանում է Սովետական Միության Զինված Ուժերի մի անբաժանելի մասը, նախապատրաստված էր հաղթական պայքար մղելու ֆաշիստական զավթիչների դեմ։

Հայրենական Մեծ պատերազմը դաժան փորձություն եղավ մեր ժողովրդի և նրա բանակի համար։

Հայրենական Մեծ պատերազմի տարինե-



րին Սովետական Միության շատ ծովեր, կղզիներ և գետեր համառ ու երկարատև մարտերի թատերաբեմ դարձան։ Բալթիկ, Բարենցի, Սև և Ազովի ծովերում, Լադոգա և Չուդ լճերում, Դնեստր, Դանուբ, Վոլգա և Դնեպր գետերում մեր զինվորական նավաստիները Սովետական Բանակի հավատարիմ ու հուսալի օգնականներն էին՝ իրենց սոցիալիստական Հայրենիքի ազատության, պատվի և անկախության համար նրա մղած հերոսական պայքարում։

Պատերազմի բոլոր տարիներին նավատորմը գործում էր մեծագույն լարվածությամբ։

Ռազմա-Ծովային Ուժերի կատարած մարտական գործողությունները աչքի էին ընկնում իրենց բացառիկ բազմազանությամբ։ Ռազմանավերը պահպանում էին մեր գործող բանակների ծովափնյա թևերը, հարվածներ հասցնում թշնամու զորքերի թևերին, հարձակումներ գործում գերմանա-ֆաշիստական նավատորմի բազաների վրա, պահպանում մեր և խափանում հակառակորդի ծովային փոխադրումները, դեսանտներ իջեցնում թշնամու թիկունքում։

Սովետական Բանակի զորքերի հետ սերտ փոխգործողությամբ մեր նավաստիները հե-

լուսաբար պաշտպանում էին հերոս-քաղաքները, ծովային հետևակի զորամասերում մարտնչում թշնամու դեմ Մոսկվայի տակ, Հյուսիսային Կովկասում, Անդրբևեռում։

Պատերազմի առաջին իսկ օրերից բացառիկ ուժով դրսևորվեցին մեր ռազմիկների լավագույն հատկությունները, անսահման նվիրվածությունը Հայրենիքին, տոկունությունը, մարտական վարպետությունը, արհամարհանքը դեպի մահը՝ հանուն հաղթանակի։

Ահա բազմաթիվ օրինակներից մեկը։

Ծովային հետևակի № բրիգադան, որ գործում էր մյուս զորամասերի հետ համատեղ, հիտլերյան զորքերի կողմից կոմբինացված հարվածի ենթարկվեց։ Թշնամու 150 ինքնաթիռների երեքժամյա անընդհատ ռմբակոծությունից և հրետանային ու ականանետային տեղատարափ գնդակոծությունից հետո բրիգադայի գտնված տեղում, թվում էր թե, ոչ մի կենդանի բան չէր մնացել։ Ձյունածածկ այդ ձորը գնդակոծությունից հետո վերածվեց ամբողջովին սևին տվող փոսերով ծածկված մի դաշտի։ Իսկ երբ ֆաշիստական տանկերը հետևակի ուղեկցությամբ անցան այդ տեղով, գվարդիական ծովայինները գնդացիրներից և զրահահար



հրացաններից կրակ բացեցին, նռնակներ նետեցին հիտլերականների վրա։ Սովետական ռազմիկների այդ աննախընթաց տոկունությունը, քաջությունն ու խիզախությունը շշմեցրին ֆաշիստներին։

Գվարդիականները ետ շպրտեցին հակառակորդին՝ մեծ վնասներ պատճառելով նրան։

Ստալինգրադյան կատաղի ճակատամարտին, որն ավարտվեց ֆաշիստական 330 հազարանոց բանակի ջախջախմամբ և որը արմատական շրջադարձ առաջ բերեց պատերազմի ընթացքի մեջ, ակտիվ կերպով մասնակցում էր Վոլգայի ռազմական նավատորմիղը։ Նա օգնում էր Սովետական Բանակին իր հրետանու կրակով, Վոլգայի վրայով տեղափոխում էր զորք, զինամթերք, պարեն։ Եղավ մի ժամանակ, երբ Ստալինգրադի տակ հաղորդակցությունը Վոլգայի ափերի միջև կարող էին պահպանել միայն զրահակատերները, որոնք և փոխադրում էին տասնյակ հազարավոր զինվորներ, հազարավոր տոննա զինամթերք և այլ բեռներ։

Կուրսկի ճակատամարտերից հետո, որը հիտլերյան զավթիչներին կանգնեցրեց անխուսափելի կատաստրոֆի առաջ, Սովետական Բանակը ամուր կերպով և վերջնակա-

նապես իր ձեռքը վերցրեց հարձակման նախաձեռնությունը։ Թշնամուն հասցրած նրա հարվածների ուժը, հարձակողական մարտերի թափը գնալով ավելի ու ավելի ուժեղանում էին, հակառակորդի խոշոր խմբավորումների շրջապատման և ոչնչացման մի գործողությանը հաջորդում էր մյուսը։

Պատերազմի այդ շրջանում Ռազմա-Ծովային Նավատորմը թե՝ ցամաքային զորքերի հետ ունեցած իր համատեղ գործողություններով և թե՛ ինքնուրույն զուտ ծովային գործողություններով օգնում էր Սովետական Բանակին մարտական հարձակողական խոշոր պլաններ իրականացնելու մեջ։ Մեծ ակտիվություն ցուցաբերեցին առանձնապես բալթյան և սևծովյան նավաստիները, ինչպես նաև Լադոգայի, Դնեպրի և Դանուբի նավատորմների ծովայինները։

Ղրիմի ազատագրման ժամանակ, 1944 թվականի ապրիլի 8-ից մինչև մայիսի 12-ն ընկած ժամանակամիջոցում, սևծովյան նավատորմի ծովայինները և օդաչուները ջրասույզ արեցին հիտլերյան զորքերով բեռնված 191 և վնասեցին 70 ռազմանավ։ 1944 թվականին մեր Բանակի կողմից թշնամուն հասցված տասը կործանիչ հարվածներից



ութին մասնակցել են սովետական ծովայինները։

Հիտլերյան Գերմանիայի կապիտուլյացումից հետո Սովետական Զինված Ուժերը իրենց ահեղ զենքն ուղղեցին յապոնական իմպերիալիստների դեմ և ջախջախեցին Կվանտունյան բանակը։ Խաղաղ օվկիանոսի Նավատորմը և Ամուրի կարմրադրոշ նավատորմիկը լուրջ օգնություն ցույց տվեցին մեր ցամաքային զորքերին։ Սովետական ծովայինները իրենց հուժկու հարվածներով գրավեցին թշնամու Ռասին, Սեյսին և այլ նավահանգիստները, ջլատեցին նրա պաշտպանությունը։

Սովետական Բանակի և Ռազմա-Ծովային Նավատորմի հաջողությունները հնարավոր դարձան շնորհիվ այն բանի, որ թիկունքից նրանց պաշտպանում էր մեր ամբողջ երկիրը։ Պատերազմի տարիներին բանվորների, գյուղացիների, ինտելիգենցիայի անձնվեր աշխատանքը ընթանում էր «Ամեն ինչ ռազմաճակատին» նշանաբանով։

Ֆաշիզմի դեմ սովետական ժողովրդի տարած համաշխարհային պատմական հաղթանակի ոգեշնչողն ու կազմակերպիչը փառապանծ Կոմունիստական պարտիան էր՝ Կենտրոնական Կոմիտեի ղեկավարությամբ։

Պարտիան իր շուրջը համախմբեց բոլոր սովետական մարդկանց, բոլոր ռազմիկներին և նրանց կամքն ու եռանդը ուղղեց Հայրենիքի պատվի, ազատության և անկախության համար մղվող պայքարին։

Ռազմա-Ծովային Նավատորմի օրը մեր երկիրը դիմավորում է իր ստեղծագործական ուժերի ծաղկման շրջանում, սոցիալիստական էկոնոմիկայի և կուլտուրայի նոր հզոր վերելքի պայմաններում։ Վաղուց արդեն գերազանցված է տնտեսական զարգացման այն մակարդակը, որ գոյություն ուներ սովետական մարդկանց խաղաղ աշխատանքի ընդհատման պահին։ Կոմունիստական պարտիայի մշտական հոգատարության և ՍՍՌՄ աշխատավորների ջանքերի շնորհիվ մեծ չափով աճել ու ամրապնդվել է մեր արդյունաբերությունը, մանավանդ ծանր ինդուստրիան։ Սովետական մարդիկ ջերմորեն հավանություն են տալիս պարտիայի և կառավարության քաղաքականությանը և կենսագործում նրանց առաջադրանքները, որոնց նպատակն է ամեն կերպ զարգացնել ծանր արդյունաբերությունը, որը հանդիսանում է ժողովրդական տնտեսության բոլոր ճյուղերի աճման, երկրի անխորտակելի պաշտպանունակության հիմքը, աշխատավորների նյու-



թական և կուլտուրական բարեկեցության անշեղ վերելքի աղբյուրը։ Ծանր արդյունաբերության հաջողությունների հիման վրա անշեղորեն զարգանում և ամրապնդվում է սոցիալիստական գյուղատնտեսությունը։

Զբաղված խաղաղ սոցիալիստական շինարարությամբ՝ սովետական մարդիկ մշտապես հոգ են տանում ՍՍՌՄ Զինված Ուժերի հզորության և մարտական պատրաստության բարձրացման մասին։ Պարտիայի ու կառավարության հոգատարության և ժողովրդի ջանքերի շնորհիվ Սովետական Բանակն ունի ժամանակակից պատերազմի պահանջներին համապատասխանող առաջնակարգ զենք ու մարտական տեխնիկա։ Մեր Ռազմա-Ծովային Նավատորմը հագեցված է նոր հածանավերով, սուզանավերով և ժամանակակից զենքով սարքավորված այլ ռազմանավերով։

Գիտության և տեխնիկայի զարգացման արդի մակարդակը հնարավորություն տվեց ստեղծել զենքի այնպիսի տեսակներ, որոնք առաջ չկային և չէին կարող լինել։ Երևան եկավ զենքի մի բոլորովին նոր տեսակ՝ ատոմային և ջրածնային ռումբը։ Անչափ աճել է ռմբակիր ինքնաթիռների արագությունը։

Այժմ ավելի քան երբեք աճել է սովետական յուրաքանչյուր ռազմիկի պատասխանա-



տվությունը իր սոցիալիստական Հայրենիքի անվտանգության համար։ Սովետական ռազմիկները գիտեն, որ որքան բարձր լինի իրենց կարգապահությունը և մարտական վարժվածությունը, այնքան ավելի հուսալի և ապահով կլինի մեր Հայրենիքի, սովետական ժողովրդի և ամբողջ առաջադեմ մարդկության ստեղծագործ աշխատանքը և խաղաղ կյանքը։

Անցած լինելով հիանալի մարտական ուղի, կոփված լինելով Հայրենիքի թշնամիների դեմ մղված կատաղի կռիվներում ՍՍՌՄ Ռազմա-Ծովային Նավատորմի անձնակազմը նորանոր հաջողություններ է ձեռք բերում իր ռազմական վարպետությունը ավելի ու ավելի կատարելագործելու ասպարեզում։ Սոցիալիզմի երկրի Զինված Ուժերի բոլոր ռազմիկների հետ միասին նա աչալրջորեն պաշտպանում է ՍՍՌՄ սրբազան շահերը և պատրաստ է պատվով կատարելու Հայրենիքի անվտանգության ապահովման գործում պարտիայի և կառավարության ամեն մի առաջադրանք։

---

## ՀԱՄԱՄԻՈՒԹԵՆԱԿԱՆ ԳՅՈՒՂԱՏՆՏԵՍԱԿԱՆ ՑՈՒՑԱՀԱՆԴԵՍԸ

Բ. ՀՈՎՍԵՓՅԱՆ

Հայկական ՍՍՌ Մինիստրների Սովետի գյուղատնտեսական բաժնի կոնսուլտանտ

Համառուսաստանյան գյուղատնտեսական առաջին ցուցահանդեսը, որը կազմակերպվեց Մոսկվայում, 1923 թվականին, Լենինը ողջունեց հետևյալ խոսքերով.

«Մեծ նշանակություն եմ տալիս ցուցահանդեսին. համոզված եմ, որ բոլոր կազմակերպությունները լիակատար աջակցություն ցույց կտան նրան։ Ի սրտե լավագույն հաջողություն եմ ցանկանում»։

Առաջին ցուցահանդեսի կազմակերպման հիմնական խնդիրն էր՝ գյուղացիներին համոզել, որ գյուղատնտեսության հետամնացության, անբերրիության ու աղքատության վերացման ուղին՝ գյուղացիական տնտեսությունների կոոպերատիվ միավորումն է, գյուղատնտեսության էլեկտրիֆիկացումն ու մեքենայացումը։

Առաջին գյուղատնտեսական ցուցահանդեսից 16 տարի հետո, 1939 թվականի օգոստոսի 1-ին, բացվեց Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը, որը ամբողջ աշխարհի առաջ ցուցադրեց կոլտնտեսային կարգի հաղթանակը, սոցիալիստական գյուղատնտեսության փայլուն հաջողություններն ու նվաճումները, սովետական գյուղի կուլտուրայի աճը, աշխարհի առաջավոր և ամենախոշոր մեքենայացված գյուղատնտեսության նվաճումները։

1939 և 1940 թվականների ամբողջ ժամանակաշրջանում հաջողությամբ գործելուց հետո 1941 թվականի հունիսի վերջին ցուցահանդեսը ընդհատեց իր աշխատանքը՝ մեր սոցիալիստական Հայրենիքի վրա ֆաշիստական հորդաների ուխտադրուժ հարձակման հետևանքով։

Հետպատերազմյան մշտապես գործող Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը բացվեց 1954 թվականի օգոստոսի 1-ին, երբ նախապատերազմյան ցուցահանդեսից հետո ընկած ժամանակաշրջանում գյուղատնտեսությունը ձեռք է բերել նոր հսկայական հաջողություններ։

Այդ ժամանակից ի վեր ցուցահանդեսը



տրադիցիոն կերպով բացվում է ամեն տարի՝ հունիսի առաջին կիրակի օրը և փակվում Հոկտեմբերյան տոնակատարություններից հետո։

Այս տարի այն բացվեց հունիսի 4-ին։

Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսի առավել շատ այցելուներ ունեցող պավիլիոններից մեկն է Հայկական ՍՍՌ պավիլիոնը։ Բավական է ասել, որ անցյալ տարում միայն մեր պավիլիոնը այցելել է մոտ երեք միլիոն մարդ, այդ թվում՝ 170 արտասահմանյան պատգամավորություն, որոնցից շատերը պավիլիոնը դիտելուց հետո հիացմունք արտահայտող գրավոր կարծիք են հայտնել։

Շենքի արտաքին տեսքը, նրա ներքին ձևավորումը բարելավելու և այն բնական էքսպոնատներով հարստացնելու ուղղությամբ ձեռնարկված միջոցառումների շնորհիվ Հայաստանի պավիլիոնը տարեցտարի ավելի շքեղանում, գեղեցկանում, հարստանում և, որ ամենագլխավորն է, ավելի բովանդակալից է դառնում։

Պավիլիոնում բնական էքսպոնատների համար, հիշեցնենք, որ միայն 1955 թվականին այնտեղ ինքնաթիռներով տարվել է 26 տոննա խաղող, 9 տոննա դեղձ, 8 տոն-

նա ծիրան, խնձոր, տանձ, սերկևիլ, նուռ, սեխ, ձմերուկ և այլն։ Ինչ վերաբերում է հացահատիկային, կերային կուլտուրաների, ծխախոտի, բամբակի և այլ կուլտուրաների էքսպոնատներին, ապա դրանք, որպես կանոն, ընտրվում և ուղարկվում են վագոններով՝ գարնանը։

Այս տարվա ցուցահանդեսի առանձնահատկությունն այն է, որ գյուղատնտեսության նվաճումների հետ միասին մենք այժմ ցուցադրում ենք նաև Հայաստանի արդյունաբերության՝ մեքենաշինության, գործիքաշինության, լեռնահանքային, մետալուրգիական, քիմիական, շինանյութերի արդյունաբերության, արհեստագործական կոոպերացիայի, ինչպես նաև գինեգործական և սննդի արդյունաբերության հաջողությունները։

Այդ պատճառով էլ պավիլիոնի գլխավոր դահլիճը այժմ հատկացված է արդյունաբերական էքսպոնատների ցուցադրմանը։

Այս տարի մեր ռեսպուբլիկայից ցուցահանդեսի մասնակցի իրավունք են նվաճել 17 կոլտնտեսություն, 2 անասնաբուծական ֆերմա, 2 շրջան՝ ամբողջությամբ վերցրած, 2 մեքենա-տրակտորային կայան, 3 սովխոզ և բազմաթիվ կոլտնտեսականներ։



Այս տարվա մասնակիցների մեջ զգալի թիվ են կազմում նրանք, որոնց հաջողությունները ու նվաճումները ցուցադրվում են առաջին անգամ։ Օրինակ, Ճամբարակի ամբողջ շրջանը, որտեղ 1000 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 21,4 ցենտներ գարի, ծխախոտի ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ 15,5 ցենտներ ծխախոտ, պլանով նախատեսված 10,9 ցենտների փոխարեն և այլն։

Այդ շրջանի Շահումյանի անվան, Կագանովիչի անվան և «Ինտերնացիոնալ» կոլտնտեսությունները հիանալի ցուցանիշներ են ձեռք բերել ծխախոտի, եգիպտացորենի բերքատվության բարձրացման, հացահատիկի, բանջարեղենի համախառն բերքի ավելացման, ոչխարների բրդատվության ավելացման, խոզաբուծության զարգացման ասպարեզում և այլն։

Ահա թե ինչու Ճամբարակի շրջանը, որ անցյալ տարի չուներ և ոչ մի ստենդ, այս տարի արժանացել է ցուցահանդեսում 4 ստենդ ունենալու պատվին։

Գյուղատնտեսության շեշտակի վերելքի վերաբերյալ պարտիայի և կառավարության դիրեկտիվները ամենակարճ ժամանակամի-

ջոցում իրագործելու օրինակ կարող է ծառայել Բասարգեչարի շրջանը, որը առաջ է ընթանում բարձր տեմպերով։ Այժմ այդ շրջանից ցուցահանդեսի մասնակիցներ են 8 կոլտնտեսություն և 63 առաջավոր։ Եվ դա այն շրջանն է, որը դեռ անցյալ տարի ցուցահանդես էր ներկայացրել միայն 3 կոլտնտեսություն և 26 առաջավոր։

Այդ կոլտնտեսությունները հիանալի ցուցանիշներ ունեն ծխախոտի, ցորենի բերքատվության բարձրացման և գյուղատնտեսական մթերքների համախառն արտադրանքի ավելացման գործում։ Ծխախոտի և ցորենի ռեկորդային բերք են ստացել Կարաիման, Կարակոյուն և Նորաշեն գյուղերի կոլտնտեսությունները։

Այսպես, կարաիմանցիները աշնանացան ցորենի ամբողջ 578 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել են 20,8 ցենտներ, իսկ 301 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից՝ նույնիսկ 29 ցենտներ բերք։ Նրանք հեկտարից ստացել են 29 ցենտներ ծխախոտ, զգալի չափով բարձրացրել են նաև խոտաբույսերի բերքատվությունը։ Այս բոլորի շնորհիվ նրանք 1955 թվականին ստացել են 14.817 ցենտներ հացահատիկ՝ 1954



թվականի 6.057 ցենտների դիմաց, 1.215 ցենտներ կաթ՝ 677 ցենտների դիմաց, 64 ցենտներ բուրդ՝ 33 ցենտների դիմաց, իսկ ծխախոտի համախառն բերքը, 1953 թվականի համեմատությամբ, ավելացրել են 400 տոկոսով։

Այսպիսի նվաճումներ ունեն նաև Կարակոյուն և Նորաշեն գյուղերի կոլտնտեսությունները։

Առաջին անգամ ցուցահանդեսում իրենց սեռնդներն ունեն Իջևանի շրջանի Աչաջուր գյուղի, Շահումյանի շրջանի «Նոր ուղի», Հոկտեմբերյանի շրջանի Ստալինի անվան կոլտնտեսությունները, Էջմիածնի առաջին մեքենա-տրակտորային կայանը, Շահումյանի մեքենա-տրակտորային կայանը և Շահումյանի անվան սովխոզը։

Կարևոր է նշել, որ ռեսպուբլիկայի նախկինում հետ մնացող շրջաններից այժմ շատ կոլտնտեսություններ մասնակցում են ցուցահանդեսին։ Այսպես, եթե Ախուրյանի շրջանը անցյալ տարի ոչ մի կոլտնտեսություն չէր ներկայացրել ցուցահանդեսին, ապա այս տարի ներկայացրել է 8 ոչխարաբուծական ֆերմա՝ յուրաքանչյուր 100 հեկտար հողատարածության դիմաց բուրդ

ստանալու գծով և երեք կաթնա-ապրանքային ֆերմա՝ կաթնատվության գծով։

Եթե Ղուկասյանի շրջանն անցյալ տարի ուներ ցուցահանդեսի միայն 5 մասնակից, ապա այս տարի նրանց թիվը հասնում է 40-ի։ Ցուցահանդեսի մասնակիցներ են նաև 2 կոլտնտեսություն և 4 կաթնա-ապրանքային ֆերմա։ Եթե անցյալ տարի Իջևանի շրջանը ցուցահանդեսի մասնակիցների թվում չուներ ոչ մի ֆերմա կամ կոլտնտեսություն, ապա այս տարի շրջանի ցուցանիշներն այնքան բարձր են, որ ցուցահանդես են ներկայացված 7 կոլտնտեսություն, մեկ ֆերմա, տասնյակ առաջավորներ և ՄՏ կայանը։

Արտաշատի, Հոկտեմբերյանի, Գորիսի, Կրասնոսելսկի և Աղինի շրջանները՝ միասին վերցրած անցյալ տարի ցուցահանդեսի մասնակիցների թվում չունեին ոչ մի կոլտնտեսային անասնաբուծական ֆերմա։

Այժմ այդ բոլոր շրջաններից 27 կաթնաապրանքային և ոչխարաբուծական ֆերմաներ կաթնատվության, բրդատվության և մսի արտադրության գծով դարձել են ցուցահանդեսի մասնակիցներ։

Մեղրու շրջանի Մեղրի գյուղի կոլտնտեսության բրիգադիր Մկրտիչ Բաշոյանը



ստացել է խաղողի բարձր բերք՝ հեկտարից 222 ցենտներ, թուզ՝ 170 ցենտներ և բոժոժ՝ յուրաքանչյուր տուփից 90-ական կիլոգրամ։

Բասարգեչարի շրջանի Կալինինի անվան կոլտնտեսության բրիգադիր Աբդուլաև Խուրո Օղլին 29 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 39 ցենտներ գարի։ Նույն շրջանի «Կարմիր Հոկտեմբեր» կոլտնտեսության բրիգադիր Հովհաննես Մկրտչյանը 80 հեկտար ցանքատարածության յուրաքանչյուր հեկտարից ստացել է 34 ցենտներ ցորեն։ Բազմահազար են գյուղատնտեսության առաջավորները։

Մեր ռեսպուբլիկայում չկա գրեթե մի կոլտնտեսություն, սովխոզ և մեքենատրակտորային կայան, որի ներկայացուցիչը դիտած չլինի Համամիութենական գյուղատնտեսական ցուցահանդեսը։

Այժմ խնդիրն այն է, որ ցուցահանդեսից վերադարձող կոլտնտեսականներն իրենց մոտ արմատավորեն այն ամենը, ինչ նոր է, առաջավոր, պրոգրեսիվ, այն, ինչ տեսել են ցուցահանդեսում։

---

# ԼԱՎԱԳՈՒՅՆ ԺԱՄԿԵՏՆԵՐՈՒՄ ԿԱՏԱՐԵՆՔ ԽՈՏՀՈՒՆՁԸ ԵՎ ԿԵՐԵՐԻ ՍԻԼՈՍԱՑՈՒՄԸ

Ա. ԴԱՎԹՅԱՆ
Հայկական ՍՍՌ Գյուղատնտեսության մինիստրության գլխավոր ագրոնոմ

Ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում ու սովխոզներում սկսվել են խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքները։

Այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները կատարելու են 175 հազար հեկտար բնական, մոտ 75 հազար հեկտար ցանովի խոտաբույսերի հունձ և պատրաստելու են շուրջ 400 հազար տոննա սիլոս։

Կոշտ և հյութալի կերերի մեծ քանակի պաշարների կուտակումից է կախված անասունների հաջող և անկորուստ ձմեռման նախապատրաստումը։

Կոլտնտեսություններում խոտհնձի աշխատանքների հաջող անցկացումը պայմանավորված է դաշտավարական և կերահայ-



թայթման բրիգադաներում, ինչպես նաև անասնապահական ֆերմաներում աշխատանքի ճիշտ կազմակերպումով։ Անհրաժեշտ է խոտհունձ կատարել ոչ միայն լավ խոտածածկ ունեցող խոտհարքներում, այլև արոտներում, դաշտամիջյան միջնակներում, ճանապարհների և առուների եզրերին, ձորերում, անտառներում և անտառային բացատներում։

Ձեռքի աշխատանքը թեթևացնելու նպատակով հարկավոր է խոտհնձի աշխատանքներում մեծ չափով օգտագործել խոտհար և հավաքող մեքենաները, ինչպես նաև քաշող ուժը, արդյունավետ օգտագործել աշխատող ձեռքերը։ Խոտհնձի ընթացքում ապահովել մեքենաների, ձեռքի գործիքների և օժանդակ ինվենտարի անխափան աշխատանքը։

Աշխատանքի նման կազմակերպումը հնարավորություն կտա կոլտնտեսություններին ժամանակին ավարտել խոտի բերքահավաքը։

Անցյալ տարի որոշ կոլտնտեսություններում, առանձնապես Արթիկի, Թալինի, Աղինի շրջաններում խոտհնձի և կերերի սիլոսացման աշխատանքները վատ կազմակերպելու հետևանքով, մեծ չափով թերակատարվեց կերերի կուտակման պլանը։ Դա լուրջ կերպով ազդեց այդ շրջանների կոլտնտեսու-

թյուններում անասունների ձմեռումը հաջող անցկացնելու վրա։ Թալինի շրջանի որոշ կոլտնտեսություններ ստիպված եղան ձմռանը հարևան շրջաններից և այլ տեղերից լրացուցիչ կեր խնդրել։

Կերի պակասը խիստ բացասաբար ազդեց այդ շրջանների կոլտնտեսություններում ինչպես անասունների գլխաքանակի պահպանման, առավել ևս նրա մթերատվության վրա։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները այս տարի ունեն բոլոր հնարավորությունները, որպեսզի անասունների մսուրային շրջանը լրիվ չափով ապահովեն կերերի անհրաժեշտ քանակով։

Խոտհունձը պետք է սկսել բնական խոտհարքներում, բույսերի ծաղկման սկզբնական շրջանում։ Խոտհնձին զուգընթաց պետք է կազմակերպել խոտի չորացման, փոխադրման և անասնապահական շենքերի մոտ դիզելու աշխատանքները, թույլ չտալով, որ խզում առաջանա դրանց միջև։ Բարձրորակ խոտ ստանալու համար մեծ նշանակություն ունի խոտհարքներում հնձած խոտի չորացումը։

Խոտը պետք է չորացնել ծածերով (յասեր)։ Այդ դեպքում բույսերը չեն կորցնում իրենց կանաչ գույնը, իսկ խոտի ամենաարժեքավոր



մասերը՝ տերևները և ծաղիկները, չեն թափվում։

Նույնպիսի հոգատարությամբ պետք է կազմակերպել չորացած խոտի հավաքման և փոխադրման աշխատանքները, ամեն կերպ ձգտել, որպեսզի հավաքը և փոխադրումը կատարվեն առավոտյան ժամերին, երբ բույսերը գիշերվա ցողից որոշ խոնավություն են ձեռք բերել։

Նման ձևով չորացրած, հավաքած և փոխադրած խոտը իր կերային արժեքով լինում է շատ բարձր։ Բավական է ասել, որ այդպիսի խոտի երկու կիլոգրամը իր կերարժեքով հավասար է մեկ կիլոգրամ վարսակի հատիկի։

Խոտհնձի հաջող անցկացումը մեծ չափով կախված է աշխատանքային բարձր կազմակերպվածությունից, ամուր կարգապահությունից և աշխատանքային օրվա ժամերը առավելագույն չափով օգտագործելուց։ Այստեղ խիստ կարևոր նշանակություն ունի նաև կոլտնտեսականների անձնական շահագրգռվածության բարձրացումը։ Խոտհնձի համար հիմնական աշխօրերով վարձատրելուց բացի, անհրաժեշտ է ընդհանուր ժողովի որոշմամբ համապատասխան որպես լրացուցիչ վարձատրություն կոլտնտեսականներին

տալ հնձված և կուտակված անասնակերի որոշ մասը։

Լրացուցիչ վարձատրությունը կատարվում է խոտհնձի և կերերի սիլոսացումը ավարտելուց հետո։ Այն տրվում է կերերի կուտակման աշխատանքներում զբաղված կոլտնտեսականներին՝ նրանց վաստակած աշխօրերին համապատասխան։

Խոտհունձը ճիշտ և ժամանակին կազմակերպելով հնարավոր է ջրովի բնական և ցանովի կորնգանի խոտհարքներից ստանալ խոտի երկու բերք, իսկ առվույտի դաշտերից մինչև հինգ բերք։

Անցյալ տարի բազմաթիվ կոլտնտեսություններ, առաջավոր փորձի օգտագործման շնորհիվ խոտի մեծ պաշարներ կուտակեցին հանրային անասունների համար։ Նրանք խոտհարքները ջրելու համար օգտագործեցին լեռնային աղբյուրների, գետերի և ձյան հալոցքի ջրերը և այդ տարածություններում կազմակերպեցին խոտի երկու հունձ։ Այդպես վարվեցին, օրինակ, Սիսիանի շրջանի Սառնակունք, Բորիսովկա, Մարտունու շրջանի Ն. Գետաշեն, Վարդենիկ, Ղուկասյանի շրջանի Հարթաշեն, Կարմրավան և այլ գյուղերի կոլտնտեսությունները։

Անհրաժեշտ է աշխատանքի այդ դրական



փորձը լայնորեն կիրառել նաև այս տարի ռեսպուբլիկայի մյուս կոլտնտեսություններում։

Անասունների ձմեռումը հաջող կազմակերպելու գործում խոշոր նշանակություն ունի սիլոսը, որը հյութալի և արժեքավոր կեր է անասունների համար։ Լավ պատրաստված սիլոսը իր մեջ պահպանում է կանաչ բուսականության սննդարար հատկությունները, որոնք շատ կարևոր են ինչպես կաթնատու կովերի, նույնպես և մատղաշ անասունների համար։

Շուտով կսկսվի կերերի սիլոսացման աշխատանքների եռուն շրջանը։ Հարկավոր է շատ կարճ ժամանակում վերանորոգել սիլոսային կառուցվածքները և ավարտել նորերի կառուցումը։ Մեքենա-տրակտորային կայանները այս տարի ռեսպուբլիկայի կոլտնտեսություններում պետք է պատրաստեն շուրջ 400 հազար տոննա սիլոս։

Այժմ սիլոսի պատրաստման համար որպես հումք պետք է օգտագործել վայրի բուսականությունը, իսկ հետագայում ցանովի սիլոսաբույսերի բերքը և բանջարա-բոստանային կուլտուրաների մնացորդները։

Մեր ռեսպուբլիկայի կոլտնտեսությունները արդեն երկրորդ տարին է, որ մեծ տարա-

ծությունների վրա կատարում են եգիպտացորենի մասսայական ցանք՝ սիլոս պատրաստելու և հատիկ ստանալու նպատակով։

Այս տարի կոլտնտեսությունները ցանել են մոտ 16 հազար հեկտար եգիպտացորեն։ Բարձր բերք ստանալու համար անհրաժեշտ է հատուկ խնամքով կազմակերպել այդ արժեքավոր կուլտուրայի մշակության՝ քաղհանի, փխրեցման, սնուցման և ջրման գործը։

Սիլոսի մասսան սովորաբար իր մեջ պարունակում է 70—80 տոկոս խոնավություն։ Այն պետք է կտրատել 2—3 սանտիմետր մեծությամբ և կառուցվածքի մեջ լցնելուց հետո՝ տոփանել։ Սիլոսացման աշխատանքը՝ կանաչ մասսայի հունձը, փոխադրումը և մանրացումը պետք է կազմակերպել այնպես, որպեսզի տվյալ կառուցվածքի լցնումը և ծածկումը կատարվի ոչ ավել, քան երեք օրում։

Ժամանակին կատարելով սիլոսի պատրաստման առաջադրանքները, մեր կոլտնտեսությունները հնարավորություն կունենան յուրաքանչյուր կովի համար պատրաստել ավելի քան հինգ տոննա սիլոս։

---

## ՈՒԺԻ ԵՎ ԳԵՂԵՑԿՈՒԹՅԱՆ ՏՈՆԸ

### Ս. ԱՎԵՏԻՍՅԱՆ

Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը մեր մեծ երկրի երջանիկ երիտասարդության տոնն է։ Այդ տոնը Սովետական սպորտի նվաճումների և հաղթանակների ստուգատեսն է, ՍՍՌՄ եղբայրական ժողովուրդների անխախտ միասնության և բարեկամության վառ ցույցը։

Մեր երկրում ֆիզկուլտուրան և սպորտը պետական խոշոր կարևորություն ունեցող գործ է։ Այն երիտասարդության կոմունիստական դաստիարակության, աշխատավորների առողջության ամրապնդման, սոցիալիստական ստեղծագործ աշխատանքի և հայրենիքի պաշտպանության համար պիտանի մարդիկ կոփելու լավագույն միջոց է։ Դեռևս քաղաքացիական պատերազմի դաժան տարիներին, երբ սովետական երիտասարդ ռեսպուբլիկան հերոսաբար ետ էր մղում սպիտակ գվարդիականների և օտարերկրյա ինտերվենտների հարձակումները,

Վ. Ի. Լենինի ստորագրությամբ լույս տեսավ Դեկրետ, որով ֆիզկուլտուրան ճանաչվում էր որպես աշխատավորների ռազմական ուսուցման բաղկացուցիչ էլեմենտներից մեկը։ Այդ արդեն նշանակում էր համապետական մասշտաբով բնակչության ֆիզիկական պատրաստականության գործի կազմակերպման սկիզբը։

Վ. Ի. Լենինը, ինչպես իր «Հիշողություններ»-ում պատմում է Կ. Ցետկինը, բազմիցս նշել է ֆիզկուլտուրայի և սպորտի հսկայական նշանակությունը։ «Երիտասարդությանը, — ասել է նա, — հատկապես հարկավոր են կենսուրախություն և առույգություն։ Առողջարար սպորտ-մարմնամարզություն, լող, էքսկուրսիաներ, ամեն տիպի ֆիզիկական վարժություններ, հոգևոր հարստությունների բազմազանություն, ուսում, վերլուծում, հետազոտություն և այս ամենը հնարավորին չափ միասին...»։

Կոմունիստական պարտիան և Սովետական կառավարությունը մեր երկրում ստեղծել են բոլոր անհրաժեշտ պայմանները ֆիզկուլտուրայի և սպորտի զարգացման, նրա ծաղկման ու մասսայականացման համար։ Ֆիզկուլտուրան և սպորտն ավելի մեծ նշանակություն են ստանում այժմ, երբ սովե-



տական ժողովուրդը ձեռնամուխ է եղել կոմունիզմի լուսավոր շենքի կառուցմանը, քանի որ հաղթանակած սոցիալիզմի երկրի երիտասարդը, իր հայրենիքի ջերմ հայրենասերը պետք է ոչ միայն գրագետ ու կուլտուրական լինի, այլև՝ ուժեղ, առողջ, կոփված, պատրաստ առաջին իսկ կոչով մեկնելու այնտեղ, որտեղ պահանջում են նրանից պարտիան ու կառավարությունը։

Մեծ են սովետական մարդկանց աշխատանքային սխրագործությունները, որոնք ուղղված են մեր Հայրենիքի բարօրության, նրա ծաղկման ու բարգավաճման գործին։ Սովետական ժողովրդի եղբայրական ընտանիքում անձնուրաց կերպով աշխատում են նաև մեր երկրի ֆիզկուլտուրնիկները։ Մեզ մոտ, գործարաններում ու ֆաբրիկաներում, կոլտնտեսային դաշտերում աշխատում են հարյուր հազարավոր ֆիզկուլտուրնիկներ և սպորտսմեններ, աշխարհի չեմպիոններ ու ռեկորդսմեններ։ Նրանք ֆիզկուլտուրան և սպորտը հաջողությամբ զուգակցում են ստեղծագործ աշխատանքի հետ։ Սովետական սպորտը վստահորեն դուրս է եկել միջազգային սպորտային ասպարեզ։ Ստադիոններում, սպորտային հրապարակներում, ջրավազաններում և վազքուղիներում մեր

սպորտսմենները փայլուն հաղթանակների են հասել։ Սովետական սպորտսմենների միջազգային հանդիպումները ամբողջ աշխարհին ցույց տվեցին սովետական սպորտի նվաճումները, մեր ռեկորդսմենների ու չեմպիոնների բարձր վարպետությունը, ջերմ հայրենասիրությունը և հաղթելու նրանց մեծ կամքը։

Անցած տարին սովետական սպորտի հաղթանակների տարի էր։ Մեր սպորտսմենները սահմանեցին 315 Համամիութենական նոր ռեկորդ, որից 119-ը գերազանցում էին համաշխարհային պաշտոնական ռեկորդները։

Համաշխարհային ռեկորդներ սահմանելու մեջ մեծ բաժին ունեն սովետական ծանրատլետները։ Ո՞վ չի լսել հանրահռչակ ատլետներ Վ. Ստոգովի, Ռ. Չմշկյանի, Ն. Կոստիլյովի, Ա. Վորոբյովի և ուրիշների անունները, որոնք միշտ էլ բարձր են պահել սովետական սպորտի պատիվը։ Մյունխենում կայացած աշխարհի առաջնության մրցումներում մեր հավաքական թիմը արժանացավ աշխարհի չեմպիոնի պատվավոր կոչման, միավորների քանակով ետ թողնելով ԱՄՆ-ի թիմին։ Այդ մրցումներում սովետական ծանրատլետները սահմանեցին համաշխարհային 5



ռեկորդ։ Միջազգային մրցումներում մեծ հաջողությամբ են հանդես գալիս սովետական մարմնամարզիկները, որոնք հանդիսանում են աշխարհի անընդմեջ չեմպիոններ։ Աշխարհի չեմպիոններ Վ. Չուկարինի, Բ. Շախլինի, Հ. Շահինյանի, Ա. Ազարյանի, Գ. Ռուդկոյի, Թ. Մանինայի և մյուսների ելույթները միշտ էլ հիացնում են հանդիսականներին իրենց կատարողական վարպետությամբ և փայլուն տեխնիկայով։

Համաշխարհային մրցումներում իրենց փառքով են պսակել սովետական ըմբիշներ Վ. Մանեևը, Վ. Ստաշկևիչը, Գ. Գամարնիկը, Վ. Նիկոլաևը, Գ. Կարտոզիան, Ա. Մազուրը, որոնք կլասիկ ըմբշամարտի դծով աշխարհի չեմպիոններ են։

Սովետական սպորտսմենները աշխարհի չեմպիոններ են հանդիսանում նաև վոլեյբոլից, շախմատից, դահուկային և հրաձգային սպորտից, ժամանակակից հնգամրցումից, չմշկավազքից (կանայք), Եվրոպայի չեմպիոններ են՝ թիավարությունից, թեթև ատլետիկայից, բասկետբոլից (կանայք), ցատկումներ ջրի մեջ ձևերից։

Գնալով ավելի են խտանում սովետական ֆիզկուլտուրնիկների և սպորտսմենների շարքերը, համալրվում նոր, շնորհալի երի-

տասարդներով, ավելի մասսայական են դառնում սպորտային միջոցառումները։ Մեզ մոտ միայն պրոֆմիությունների սպարտակիադաներին մասնակցեց երեք միլիոն մարդ, իսկ սովորող երիտասարդության սպարտակիադաներին՝ 10 միլիոն։

Սովետական սպորտսմենները խաղաղության պրոպագանդիստներ են։ Նրանք միշտ էլ եղել և մնում են խաղաղության համար պայքարող մարտիկների առաջին շարքերում։ Տարեցտարի աճում են սովետական և արտասահմանյան սպորտսմենների բարեկամական կապերը։ Միայն անցյալ տարի Սովետական Միություն են այցելել արտասահմանյան 174 սպորտային դելեգացիաներ, այդ նույն ժամանակամիջոցում միջազգային հանդիպումներ ունենալու համար արտասահման են մեկնել սովետական 142 սպորտային դելեգացիաներ։ Մոտ 100 ֆուտբոլային հանդիպումներ են ունեցել սովետական ֆուտբոլիստները, այդ թվում աշխարհի ուժեղագույն թիմերի՝ Գերմանիայի Ֆեդերատիվ Ռեսպուբլիկայի, Անգլիայի, Հունգարիայի, Ֆրանսիայի և այլ երկրների ֆուտբոլիստների հետ։

Այս տարի Ֆիզկուլտուրնիկի Համամիութենական օրը սովետական սպորտսմեն-



ները դիմավորում են նորանոր նվաճումներով։ Կորտինա դը Ամպեցոյում կայացած 7-րդ ձմեռային օլիմպիական խաղերում նըրանք փայլուն հաղթանակի հասան, նվաճելով 26 ոսկե, 5 արծաթե և 6 բրոնզե մեդալներ։ Սովետական խոկեիստները նվաճեցին օլիմպիադայի, աշխարհի և Եվրոպայի չեմպիոնների պատվավոր կոչումը։ Սովետական չմշկորդ Օ. Գոնչարենկոն արժանացավ աշխարհի չեմպիոնի ոսկե մեդալին։ Մարտ ամսում Փարիզում կայացած «Յումանիտե» թերթի կազմակերպած մրցումներում սովետական թեթև ատլետները գրավեցին առաջին տեղը, իրենց հետ հայրենիք բերելով «Յումանիտե»-ի երեք մրցանակ։ Սովետական սպորտսմենները փայլուն կերպով մասնակցեցին նաև խաղաղության 9-րդ հեծանվավազքին. 12 օր տևող հեծանվավազքում նրանք կարողացան 2000 կիլոմետրից ավելի տարածություն անցնել և հասնել հաղթանակի։

Այս տարի հուլիս-օգոստոս ամիսներին մեր Հայրենիքի մայրաքաղաք Մոսկվայում կկայանա ՍՍՌՄ ժողովուրդների սպարտակիադան, որը խոշոր իրադարձություն է սովետական սպորտի պատմության մեջ։

Սպարտակիադային հաջողությամբ են

նախապատրաստվում նաև մեր ռեսպուբլիկայի ֆիզկուլտուրնիկները և սպորտսմենները։ Ռեսպուբլիկայի բոլոր քաղաքներում և շրջաններում հազարավոր ֆիզկուլտուրնիկներ և սպորտսմեններ մասնակցեցին ֆաբրիկաներում և գործարաններում, կոլտնտեսություններում և այլ ձեռնարկություններում անցկացված մրցումներին։ Մեր սպորտսմենները հարստացնում են իրենց սպորտային փորձը, նրանք հանդիպումներ են ունեցել և պատվով դուրս եկել Լատվիայի, Ղազախստանի, Ադրբեջանի և եղբայրական մյուս ռեսպուբլիկաների սպորտսմենների հետ ունեցած մրցումներում։

Սովետական սպորտի հաջողությունները ակնհայտ են, սակայն մեր սպորտսմենները չեն հանգստանում ձեռք բերած հաջողություններով։ Նրանք համառ և սիստեմատիկ աշխատանք են տանում իրենց սպորտային տեխնիկական ցուցանիշները բարելավելու, ձեռք բերածը ամրապնդելու, նորանոր նվաճումների հասնելու համար։ Մեր խնդիրն է՝ անընդհատ զարգացնել ֆիզկուլտուրան և սպորտը, զարկ տալ նրա մասսայականացմանը, պայքարել Համամիութենական, համաշխարհային ռեկորդներ ու առաջնություն նվաճելու համար։

---



# ԺՈՂՈՎՐԴԱ-ԴԵՄՈԿՐԱՏԱԿԱՆ ԵՐԿՐՆԵՐԻ ՆՈՐ ՀԱՋՈՂՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

**(Թվեր և փաստեր)**

*Ժողովրդա-դեմոկրատական երկրների աշխատավորները իրենց կոմունիստական և բանվորական պարտիաների ղեկավարությամբ վերջին տարիներս ձեռք են բերել նոր հաջողություններ սոցիալիստական շինարարության բնագավառում։ Ահա մի շարք թվեր և փաստեր այդ մասին։*

★ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը տարեկան պլանը 1955 թվականին կատարել է 101 տոկոսով, այդ թվում պետական ձեռնարկությունները՝ 108 տոկոսով։ Արդյունաբերության համախառն արտադրանքը 1954 թվականի համեմատությամբ ավելացել է 8 տոկոսով, այդ թվում պետական ձեռնարկությունների համախառն արտադրանքը՝ 15 տոկոսով։

★ 1955 թվականին Չինաստանում արտադրվել է 12 միլիարդ 278 միլիոն կիլովատ-ժամ էլեկտրաէներգիա, արդյունահանվել է 93,6 միլիոն տոննա քարածուխ,

966 հազար տոննա նավթ, ձուլվել է 3,6 միլիոն տոննա չուգուն, 2,85 միլիոն տոննա պողպատ, 2,5 միլիոն տոննա գլանվածք, բաց է թողնված 1954 թվականի համեմատությամբ, 97 տոկոսով ավելի էլեկտրագեներատոր, 88 տոկոսով ավելի շոգեքարշ, 70 տոկոսով ավելի ապրանքատար վագոններ, իսկ երկանիվանի և երկխոփանի գութանների արտադրությունը 1954 թվականի համեմատությամբ ավելացել է 8,7 տոկոսով:

★ 1955 թվականին Չինաստանի արդյունաբերությունը յուրացրել է այնպիսի բարդ մեքենաների և սարքավորումների արտադրությունը, ինչպես 10 հազար կիլովատ հզորության հիդրոգեներատորներ և հիդրոտուրբիններ, 8 հազար կիլովատ հզորության կոնդենսացիոն շոգետուրբիններ, ժամում 40 տոննա շոգու արտադրողականության կաթսաներ, 59 տեսակ մետաղահատ դազգահներ, հացահատիկային կոմբայններ և այլն:

★ Չինական Ժողովրդական Ռեսպուբլիկայի արդյունաբերությունը անշեղորեն զարգանում է սոցիալիստական ուղիով: 1955 թվականին պետական արդյունաբերական ձեռնարկությունների բաժինը երկրի ընդհանուր արդյունաբերական արտադրության մեջ կազմել է 63 տոկոս, կոոպերատիվ ձեռնարկություններինը՝ 5 տոկոս, խառն պետական-մասնավոր ձեռնարկություններինը՝ 16 տոկոս և մասնավոր ձեռնարկություններինը՝ 16 տոկոս:

★ Խոշոր փոփոխություններ են տեղի ունեցել նաև



չինական գյուղում: 1954 թվականի 630 հազար գյուղատնտեսական արտադրական կոոպերատիվների փոխարեն 1955 թվականին դրանց թիվը երկրում հասել է 1 միլիոն 900 հազարի, որոնց մեջ միավորվել է երկրի գյուղացիական տնտեսությունների 63 տոկոսը:

★ 1955 թվականին Չինաստանի գյուղատնտեսությունը երկրին տվել է 184 միլիոն տոննա հացահատիկ, որը 9 տոկոսով ավել է 1954 թվականից, 1 միլիոն 518 հազար տոննա բամբակ, որը 43 տոկոսով ավել է 1954 թվականից:

★ Չինաստանում լայն թափով շարունակվում է ծանր արդյունաբերության օբյեկտների շինարարությունը: 1955 թվականին իրականացվում էր 385 խոշոր արդյունաբերական ձեռնարկությունների շինարարությունը: Դրանցից արդեն շահագործման են հանձնըվել 82 ձեռնարկություն, այդ թվում՝ «Դունշան» քարածխային հանքը, Խեդանի քարածխային ավազանում, Մուկդենի առաջին դազգահաշինական գործարանը, ջերմաէլեկտրակայանը Դալնի քաղաքում և այլ ձեռնարկություններ: Այդ ձեռնարկությունների մի մասը կառուցվում է Սովետական Միության ակտիվ օգնությամբ:

★ Երկրում կառուցվել և շահագործման է հանձնվել 1222 կիլոմետր նոր երկաթուղի և 8138 կիլոմետր խճուղային ճանապարհ:

★ Տնտեսական հաջողությունների հիման վրա լայն թափով զարգանում է չինական կուլտուրան, աճում ժո-

ղովրդի բարեկեցությունը։ 1955 թվականին երկրի բարձրագույն ուսումնական հաստատություններում սովորում էր 290 հազար ուսանող, տեխնիկումներում՝ 537 հազար ուսանող։ Բարձրագույն ուսումնական հաստատությունները անցյալ տարի տվել են 67 հազար երիտասարդ մասնագետ, որը նախորդ տարվա համեմատությամբ ավել է 18 տոկոսով, իսկ միջնակարգ տեխնիկական ուսումնական հաստատությունները՝ 235 հազար մարդ։

★ Անցյալ տարի երկրում բաց է թողնվել 112 կինոֆիլմ և շինարեն կրկնօրինակվել է (դուբլյաժ) 136 արտասահմանյան ֆիլմ։ Զգալիորեն ավելացել է թերթերի, ամսագրերի քանակը և տիրաժը, կառուցվել են բազմաթիվ կուլտուրայի տներ։

★ Վեցամյա պլանի կենսագործման շնորհիվ Լեհական Ժողովրդական Ռեսպուբլիկան դարձել է բարձր զարգացման հասած արդյունաբերական երկիր։ Վեցամյակի տարիներին արդյունաբերական արտադրանքի միջին տարեկան աճը կազմել է 17,8 տոկոս։ 1955 թվականին արդյունաբերության համախառն արտադրանքի ծավալը 1949 թվականի համեմատությամբ ավելացել է 2,8 անգամ և մոտ 5 անգամ՝ նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ։

★ 1955 թվականին Լեհաստանում արտադրվել է՝ էլեկտրաէներգիա 17,7 միլիարդ կիլովատ-ժամ (աճը 1949 թվականի համեմատությամբ կազմում է 213 տոկոս), քարածուխ՝ 34,5 միլիոն տոննա (աճը 1949 թվականի համեմատությամբ հասնում է 127 տոկոսի), չուգուն 3,1 միլիոն տոննա (աճը 1949 թվականի համեմատությամբ 221 տոկոս), պողպատ՝ 4,3 միլիոն տոննա (աճը 1949 թվականի համեմատությամբ 293 տոկոս), մետաղահատ դազգահներ 13,9 հազար հատ և այլն։



★ Ժողովրդա-դեմոկրատական Լեհաստանում ստեղծվել են մեքենաշինական արդյունաբերության նոր ճյուղեր՝ տրակտորային և ավտոմոբիլային շինարարություն, ծանր մեքենաշինություն, դազգահաշինություն, ավիա և նավաշինություն։ Վեցամյակի տարիներին երկրում արտադրվել է 37 հազար բեռնատար, 9 հազար մարդատար ավտոմեքենաներ և 70 հազար մոտոցիկլետներ։ Նավաշինարարները արտադրանքի ծավալը 1955 թվականին 1949 թվականի համեմատությամբ ավելացրել են 9 անգամ։

★ Վեցամյակի տարիներին շարք են մտել ծանր արդյունաբերության մի շարք կարևորագույն օբյեկտներ, այդ թվում էլեկտրակայանները «Յավոժնո 2-րդում» (Կրակովի վոյևվոդություն) և Ժերանում (Վարշավա), Լենինի անվան մետալուրգիական կոմբինատը Նովայա Գուտայում, քիմիական կոմբինատները Օսվենցիմում և Կենձեժինում, ավտոմոբիլային գործարանները Լյուբլյանայում և Վարշավայում ու ուրիշ շատ այլ գործարաններ ու ֆաբրիկաններ։

★ Լայնորեն զարգացել է նաև թեթև արդյունաբերությունը։ Բամբակյա գործվածքների արտադրությու-



նը 1949 թվականի 406 մլն. մետրի փոխարեն ավելացել և 1955 թվականին հասել է 568 մլն. մետրի կամ աճել է մոտ 40 տոկոսով, բրդյա գործվածքներինը՝ համապատասխան ժամանակամիջոցում, 50,1 մինչև 76 մլն. մետր, մետաքսյա գործվածքներինը՝ 70 տոկոսով։ Այդ նույն ժամանակամիջոցում շաքարի արտադրությունը 745 հազար տոննայից հասել է 980 հազար տոննայի։

★ 1955 թվականի սկզբին Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկայում թողարկվող արդյունաբերական արտադրանքի ծավալը 2 անգամ ավելացել էր 1936 թվականի համեմատությամբ։ Երկրում այժմ գործում են ինդուստրիալ այնպիսի գիգանտներ, ինչպես Ստալինի անվան, «Խեննիգսդորֆ», «Մաքս-Խյուտտե» և այլ մետալուրգիական կոմբինատները, Բրանդենբուրգի, Ռիզեի, Գրեդիցի, Դելենի և մյուս գործարանները։

★ 1949 թվականին ԳԴՌ-ում արտադրվել է 250 հազար տոննա չուգուն և 355 հազար տոննա պողպատ, իսկ 1955 թվականի սկզբներին՝ ավելի քան 1,5 միլիոն տոննա չուգուն և ավելի քան 1,8 միլիոն տոննա պողպատ։

★ Գերմանական Դեմոկրատական Ռեսպուբլիկան արդյունաբերական զարգացման տեմպերի տեսակետից առաջ է անցել Արևմտյան Գերմանիայից։ Եթե 1952 թվականին արդյունաբերական արտադրանքը նախապատերազմյան մակարդակի համեմատությամբ, ինչպես



ԳԴՌ-ում, այնպես էլ ԳՖՌ-ում գտնվում էր մոտավորապես միևնույն աստիճանի վրա, ապա արդեն մեկ տարի անց ԳԴՌ-ի արդյունաբերական արտադրանքի ծավալը նախապատերազմյան մակարդակի նկատմամբ կազմում էր 176 տոկոս, իսկ Արևմտյան Գերմանիայում միայն 157 տոկոս։

---

## СОДЕРЖАНИЕ

Стр.

### МАТЕРИАЛЫ ДЛЯ БЕСЕД



### ИСПОЛЬЗУЙ ВО ВРЕМЯ БЕСЕДЫ



Ի տ. խմբագրի՝ Վ. ԵՆԳԻԲԱՐՅԱՆ

## ՆՈՐ ԳՐՔԵՐ

Ա. ԿՈՒՊՐԻՆ — «Պատմվածքներ»։ Գինը 6 ռ., 470 էջ, տիրաժ 5.000։

ՀԱՋԻԵ ՋՆԴԻ ՋՈՒԱՐԻ — «Մամե ու Զինե»։ Գինը 5 ռ. 10 կ., 189 էջ, տիրաժ 5.000։

«Տնտեսական վիճակագրության դասընթաց»։ Գինը 13 ռ. 55 կ., 578 էջ, տիրաժ 3.000։

Զ. ԴԻԼԱՆՅԱՆ — «Կաթի և կաթնամթերքների տեխնոլոգիան»։ Գինը 9 ռ. 45 կ., 545 էջ, տիրաժ 3.000։

Պ. ՊԱՎՅՈՒԿԻՆ — «Կրոնական սնահավատություններն ու նրանց վնասը»։ Գինը 5 ռ. 40 կ., 288 էջ, տիրաժ 5.000։

Հ. ՍՄԲԱՏՅԱՆ — «Միամյա կերային կուլտուրաների մշակությունը»։ Գինը 65 կ., 56 էջ, տիրաժ 2.000։

---

**Отдел пропаганды и агитации**
**ЦК КП Армении**
**БЛОКНОТ АГИТАТОРА**
**№ 13 1956 г.**

ՎՖ 04659 Պատվեր 568 Տիրաժ 8450

ՀՍՍՌ Կուլտուրայի մինիստրության հրատարակչությունների և պոլիգրաֆ արդյունաբերության գլխավոր վարչության II տպարան, Երևան, Կնունյանցի № 8։

Գինը 50 կոպ.։